## ՉԱՆԱՉԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

*ԱԼԺԵՐԻՈՑ ֆրանսական հպատակներու կարգ մը դասերուն քուէարկութեան իրաւունք տալու համար, օրինագիծ մը մշակած է նախարարական խորհուրդը։*

*ՉԻՆՈՒՈՐ ԳԼՈՒԽ ամէն օր երկու քառորդ չափ գինի պիտի տրուի բոլոր զօրանոցներուն մէջ։ Ուրիշ առաւելութիւններ ալ պիտի տրուին։*

*ԿՐԻՓԻ ՀԱՄԱՃԱՐԱԿ մը ծագած է Լոնտոնի մէջ, վտանգաւոր համեմատութիւններ ստանալով։ Մասնագէտ մը կ'ըսէ թէ ներկայ համաճարակը կրնայ բաղդատուիլ 1913ի եւ 1924ի հետ, երբ հիւանդութիւնը գերեզման տարաւ բազմաթիւ մարդիկ։*

*Մ. ՆԱՀԱՆԳՆԵՐՈՒ կառավարութիւնը հեռագրով յանձնարարեց Լոնտոնի, Պերլինի, Հռոմի եւ Մոսկուայի դեսպաններուն, որ բացատրեն թէ արտաքին նախարարութիւնը եթէ արտօնած է չարք մը օդանաւեր փոխադրել Սպանիա, իր կամքէն անկախ է այդ գործողութիւնը, քանի որ չէր կրնար ուրիշ կերպ շարժիլ, չեզոքութեան ներկայ օրէնքով։ Կառավարութիւնը անհրաժեշտ գըտած է այս բացատրութիւնը, վախնալով որ միջազգային բարդութիւններ կը ծագին… Խորհրդարանը ձեռնարկած է նոր օրէնք մը քուէարկելու չէզոքութեան մասին։*

*ՊԱՊԻՆ ԱՌՈՂՋԱԿԱՆ ՎԻՃԱԿԸ միշտ ծանր է, եւ այլեւս շատ քիչեր կը հաւատան որ կարենայ ազատիլ ներկայ տագնապէն։*

*ԱՐՀԻԴՈՒՔՍ ՖՐԻՏՐԻԽ, Աւստրիա-Հունգարիոյ բանակին սպարապետը՝ 1914–16ին, մեռաւ 80 տարեկան հասակին մէջ։*

*ԵՐԿՈՒ ԽՈՐՀՐԴԱՅԻՆ ԳԻՏՆԱԿԱՆՆԵՐ, Ալէքսէյ Տիշիպալին եւ Փրոֆ. Վլատիմիր Իպատիեւ, վտարուեցան Գիտութեանց Ակադեմիայէն, մերժած ըլլալով Մոսկուա վերադառնալ արտասահմանէն, ուր ղրկուած էին որոշ պաշտօնով։ Այս առթիւ փրոֆ. Իպատիեւի որդին, երիտասարդ գիտնական մը, նամակ մը գրելով իր քրոջը հետ, կը յայտարարէ թէ այլեւս չեն կրնար մարդու երեսնայիլ եւ կը դատապարտեն իրենց հօրը դաւաճանութիւնը…*

*ԹՐՈՑՔԻ Մեքսիկա գնաց, բայց իր բարեկամները կը վախնան որ սպաննուի Սթալինի կուսակիցներուն կողմէ։ Կը կարծուի թէ ներքին քաղաք մը պիտի քշուի, ապահովութեան համար։*



## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ

*կազմակերպուած Ֆ. Հ. կապոյտ Խաչի Անկէնի մասնաճիւղին կողմէ*
3 Յունուար, կիրակի կէսօրէ վերջ ժամը 2 30ին,
Cascade du Lac-ի սրահին մէջ (Լճին մօտ)։
*ԿԱՂԱՆԴ ՊԱՊԱ, փոքրիկ ներկայացում մը, նուէրներ, արտասանութիւններ եւ նախընթրիք։*
մեծերու համար մուտք 3 ֆր.։

## ՄԱՆՈՒԿՆԵՐՈՒ ՕՐ

*Ֆ. Կ. Խաչի Շավիլի մասնաճիւղին կողմէ*
3 Յունուար, կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին, դպրոցի սրահին մէջ
4 rue des Trois Chantiers.
*Երգ, արտասանութիւն եւ «ՏԻԿԻՆ ՍԻՐԱՆ» կատակերգութիւն մը, փոքրիկներու կողմէ։ Նուէրներու բաշխում աշակերտներուն։*
Նախընթրիք եւ պտուղ կը բաժնուի բոլոր ներկայ փոքրիկներուն։
*Մուտք 2 ֆրանք*

## ԳԻՆԻԽՄԵՂԱՆ

*Ֆ. Կ. Խաչի Իսի լէ Մուլինոյի մասնաճիւղին կողմէ*
3 յունուար, կիրակի կէսօրէ վերջ ժամը 4.30էն մինչեւ կէս գիշեր,
գարակէօզեանի սրահին մէջ, 5 րիւ տը լա Տէֆանս, Իսի։
*Գեղարուեստական բաժին։ Հայկական եւ եւրոպական պարեր։*
Մուտք մեծերու 5 ֆր., փոքրիկներու 2 ֆր.

## ՀԱՅԿԱԿԱՆ ԿԱՂԱՆԴ

ՍԻՓԱՆ—ԿՈՄԻՏԱՍ ԵՐԳՉԱԽՈՒՄԲԻ ՏՕՆԱԾԱՌԸ
*2 Յունուար, շաբաթ երեկոյ ժամը 21էն մինչեւ առաւօտ,*
*Հայ Երիտասարդաց Ընկերութեան սրահին մէջ,* **8 Rue Bossuet**
Place Lafayette, Métro Gare du Nord կամ Poissonnière
**Orchestre,** *անակնկալներ եւ ճոխ պիւֆէ։*
*Տախսերու մասնակցութեան համար մուտք 3 ֆր.։*
ԾԱՆՕԹ — երգչախումբի վիճակախաղը տեղի կ'ունենայ նոյն երեկոյ։

—o—

*Սիփան-կոմիտաս երգչախումբի տարեկան ցերեկոյթ-պարահանդէսը* **Salle Hoche**-*ի մէջ, 21 փետր.։ Նկատի ունենալ այդ թուականը։*

## ԸՆԿԵՐԱՀԱՄԱԿՐԱԿԱՆ

### Ընտանեկան խնջոյք — համերգ

*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Մարսէյլի «Ռոստոմ» եւ «Իշխան» ենթակոմիտէներու եւ «Վահագն» խումբի*
ՀՈՎԱՆԱՒՈՐՈՒԹԵԱՄԲ ՇՐՋ. ԿՈՄԻՏԷԻ
*Տեղի կ'ունենայ Յունուար 3ին, կիրակի կէսօրէ վերջ ժամը 2.30ին «Շահրիկեան» սրահին մէջ։*
Տախսերու մասնակցութեան համար 4 ֆր.
տասը տարեկանէն վեր փոքրերուն՝ 2 ֆր.
*Մանրամասնութիւնները տեղւոյն վրայ։*

## ԸՆՏԱՆԵԿԱՆ ԽՆՋՈՅՔ-ԵՐԵԿՈՅԹ

ՆՈՐ ՏԱՐՈՒՈՅ ԱՌԹԻՒ
*Նախաձեռնութեամբ Հ. Յ. Դ. Պօմոնի Զաւարեան ենթակոմիտէի եւ մասնակցութեամբ Վարանդեան խումբի*
2 յունուար շաբաթ երեկոյ ժամը 8ին, վարանդեան սրահին մէջ,
10 Bld. de Marguerite, Beaumont
*կը նախագահէ ընկ. Հ. ՊԱՍՄԱՃԵԱՆ*
ԿԸ ԽՕՍԻ ԸՆԿ. **ՀԱՅԿ ՍԻՐԷՆԿԻՒԼԵԱՆ**
*Գեղարուեստական ճոխ բաժին երգ, արտասանութիւն, նուագ եւլն։*
*կը ներկայացուի* «ԴԻՈ ՄԻ ՎԱՃԱՌԱԿԱՆԸ»
կերուխում մինչեւ առաւօտ։ Սրահին տաքութիւնը ապահովուած է։
Տախսերու մասնակցութիւն 2 ֆր.

## ՏՕՆԱԾԱՌ

ՓԱՐԻԶԻ ՀԱՐ. ՇՐՋԱՆԻ ՅԱՌԱՋԴԻՄԱՍԻՐԱՑ ՄԻՈՒԹԵԱՆ ԿՈՂՄԷ
*ի նպաստ իր վարժարանին*
3 *Յունուար, կիրակի կէսօրէ վերջ ժամը 3ին,*
**150 Route d'Orléans,** *Պանեէօ*
*կը ներկայացուի ՆՇԱՆ ՊԷՇԻԿԹԱՇԼԵԱՆԻ*
1936Ի ԵՒ 1937Ի ՊԱՅՔԱՐԸ
Ոտանաւոր կատակերգութիւն։
*Աշակերտութեան կողմէ խմբերգներ եւ արտասանութիւններ։*
*Թատր ու Պար եւ անակնկալներ*
*Պտղաբաշխութիւն Ֆ. Կ. Խաչի Մասնաճիւղին կողմէ։*
*Մուտք 3 ֆր.*

## ԿԱՂԱՆԴԻ ԾԱՌ

*փոքր տ'Իթալիի Դպրոց. Տիկնանց Մասնաճիւղի զոյգ վարչութեանց*
2 յունուար, շաբաթ կէսօրէ վերջ ժամը 2ին. Գ. Յովհաննէսեանի սրահը,
13 rue Pierre Curie, Kremlin Bicêtre.
*Երգ, արտասանութիւն, ներկայացում դպրոցի աշակերտներուն կողմէ։*
*Կաղանդ Պապան նուէրներ կը բաշխէ աշակերտներուն։*
Նուէրները տրամադրած է Համազգայինի Ֆրան սայի կեդր. վարչութիւնը։
*ՄՈՒՏՔ 3 ՖՐ.*



## ԿԸ ՓՆՏՌՈՒԻ

*ԿԸ ՓՆՏՌՈՒԻ Կարապետ Չէփճեան, ծնած Աշոտի գիւղէն, 3 տարի փախադրուած Կիւրին։ Տեղահանութեան միջոցին կը գտնուէր Աստանա։ Լուր կայ որ 1920ին կը գտնուէր Պոլիս։ Իր հասցէն գիտցողներէն կը խնդրուի իմացնել իր քրոջ՝ Տիկին Իսկուհի Գույումճեանի (Չէփճեան), յառաջի միջոցաւ։*




Le Gérant: H. STEPHAN
Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Dameme, PARIS (13)

նոր հպատակներն են, եւ 250,000ը միայն բուն Ֆրանսայի։ Եւ այս թիւն ալ դեռ շատ վար կը մնայ իրականութենէն։

ԳԵՐՄԱՆԱՑԻՆԵՐՈՒ ՁԵՐԲԱԿԱԼՈՒԹԻՒՆԸ կը շարունակուի Խ. Միութեան մէջ, համաձայն գերմանական թերթերու տեղեկութեանց։ Դեկտեմբեր 30ի գիշերը Լէնինկրատի մէջ ձերբակալուած է մարդանքի ուսուցիչ մը, Մէյէր։ Գերման ճարտարագէտ Մէյկէր որ Ծնունդէն առաջ ձերբակալուած էր իր կնոջը հետ, փոխադրուած է Մոսկուա։ Գերմանիոյ արտաքին նախարարութեան տուած լուրերուն համաձայն, ձերբակալուած Գերմանացիներուն թիւն է 38, որոնց 15ը Լէնինկրատի մէջ։

6489 ՀՈԳԻ ԶՈՀ ԳԱՑԱԾ ԵՆ երթեւեկի արկածներու, 1936ի ընթացքին, ամբողջ Անգլիոյ մէջ։ Իսկ վիրաւորներուն թիւը քառորդ միլիոնը կ'անցնի։

ԽՈՐՀՐԴԱՐԱՆԸ ՓԱԿԵՑ իր նստաշրջանը, տարեգլուխն ալ նիստ գումարելով եւ քուէարկելով հարկային եւ երմտական օրինագիծները։

ՄԻԿԷԼ ՈՒՆԱՄՈՒՆՕ, Սպանիացի հռչակաւոր գրագէտը եւ Սալամանքայի համալսարանին վերատեսուչը, յանկարծամահ եղաւ յունուար 1ին։ Համոզումով հակառակ էր Սպանիոյ կառավարութեան բռնած դիրքին։

ԱՆԳԼԻԱԿԱՆ ՊԱՏՈՒԻՐԱԿՈՒԹԻՒՆ ՄԸ պիտի երթայ Մ. Նահանգները, խորհրդակցելու համար պատերազմական պարտքերու մասին։ Պատուիրակութեան մէջ կը գտնուին հինգ երեսփոխաններ, որոնք միեւնոյն ատեն պիտի փորձեն ապահովել Մ. Նահանգներուն գործակցութիւնը, եթէ պատերազմ ծագի Եւրոպայի կամ Արեւելքի մէջ։

ԳԵՐՄԱՆԻՈՅ ՊԱՏԵՐԱԶՄԻ ՅԱՅՏԱՐԱՐՈՒԹԵԱՆ պաշտօնական բնագրին կորուստը կը հաստատէ «Մաթէն», նոր եւ աւելի զարմանալի մանրամասնութիւններ հաղորդելով։ Նոյն թերթին համաձայն, կորսուած է նաեւ այն զեկոյցը որով Սերպիա կը հաղորդէր իր պատասխանը՝ Աւստրիոյ վերջնագրին։

---

Տէր եւ Տիկին Նոյեմզար Հրաչեան, Գարեգին, Աստղիկ, Թամարա եւ Յարութիւն Հրաչեաններ եւ պարագաները սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց սիրելի ամուսնոյն եւ անմոռանալի հօր եւ ազգականին՝

## ԱՄԱՏՈՒՐ ՀՐԱՉԵԱՆԻ

դառնաղէտ մահը՝ որ տեղի ունեցաւ 1 յունուար գիշերուան ժամը 3ին, 52 տարեկան հասակին։

Յուղարկաւորութիւնը տեղի պիտի ունենայ այսօր կիրակի, 3 յունուար, առաւօտեան ճիշդ ժամը 10ին իր բնակարանին մէջ, 35, Ալէ Նիքօլա-Քարնօ, Լը Րէնսի (Սէն է Ուազ), ուրկէ հանգուցեալին մարմինը պիտի փոխադրուի Րէնսիի գերեզմանատունը։

*ԾԱՆՕԹ.— Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել։*

*ՀԱՂՈՐԴ. ՄԻՋՈՑ.— Կար մը Լէօթէն առնել չոգեկառք ժամը 9.12ին եւ իջնել Րէնսի Վիլմօնպլը։*

---

Տէր եւ Տիկին Հրանտ Թրավէսեան եւ զաւակունք, Տէր եւ Տիկին Քէշիշեան եւ զաւակունք, Տէր եւ Տիկին Մանուկեան եւ զաւակունք, ինչպէս նաեւ բոլոր ազգականները սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց սիրելի հօր, մեծ հօր, աներհօր եւ ազգականին՝

## ՆԱԶԱՐ ԲԱԼՈՒԵԱՆԻ

դառնաղէտ մահը որ տեղի ունեցաւ դեկտ. 31ին։

Յուղարկաւորութիւնը տեղի կ'ունենայ այսօր, կիրակի, կէսօրէ վերջ ժամը 1ին Հօփիթալ Քօշէնի մէջ, 12 րիւ տը լա Սանթէ, ուրկէ հանգուցեալին մարմինը պիտի փոխադրուի Թիէի գերեզմանատունը։

*ԾԱՆՕԹ.— Մահազդ չստացողներէն կը խնդրուի ներկայս իբր այդ նկատել։*

---






































Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN)

17, Rue Damesme. PARIS (13)




# ԳԵՐՄԱՆԻԱ ԵՒ ԻՏԱԼԻԱ ՊԱՏԱՍԽԱՆԵՑԻՆ
## Ծանր պայմաններ դնելով

Գերմանիա եւ Իտալիա հինգշաբթի օր յանձնեցին իրենց պատասխանները՝ անգլեւֆրանսական ծանուցագրին, որ կ'առաջարկէր դադրեցնել կամաւորներու առաքումը դէպի Սպանիա եւ աւելի խստացնել հսկողութիւնը: Երկու պատասխաններն ալ նոյն բաները կ'ըսեն,— անհրաժեշտ է փոխել գործելու մեթոտները եւ արգիլել որ եւ է ուղղակի կամ անուղղակի աջակցութիւն: Թէ Պերլինի եւ թէ Հռոմի մէջ կը կարծեն թէ միակողմանի արգելք մը կրնայ վնասել Զօր. Ֆրանքոյի յաղթանակին: Հետեւաբար, անհրաժեշտ կը գտնեն ազդու հսկողութիւն հաստատել Սպանիոյ չուրջը, չահակից պետութեանց կողմէ, հեռացնելու համար բոլոր ոչ-սպանիացի ռազմիկները, բայց պայմանաւ որ վերջնապէս խափանուին բոլոր ուղղակի կամ անուղղակի միջամտութիւնները:

Աւելորդ է ըսել թէ երկու կառավարութիւններն ալ նկատի ունին Խ. Միութեան կատարած դերը՝ Սպանիոյ մէջ: Ուրեմն պիտի քաշքշեն բանակցութիւնները, միշտ վստահ ըլլալով թէ յաղթանակը պիտի չահին Սպանիոյ ապըս-տամբները:

Այս առթիւ անգամ մը եւս կը չեշտուի Գերմանիոյ եւ Իտալիոյ սերտ գործակցութիւնը՝ միջազգային հարցերու մէջ:

### ԶԱՆԱԶԱՆ ԼՈՒՐԵՐ ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՕՐԹՈՏՈՔՍ ԾՆՈՒՆԴԸ այս տարի մեծ հանդիսաւորութեամբ տօնուեցաւ Մոսկուայի բոլոր եկեղեցիներուն մէջ, չորեքշաբթիէն հինգշաբթի: Հաւատացեալներուն մէկ մասը տեղ չգտնելով, դուրսը մնաց: Ասոնք մեծ մասով տարէց կիներ էին, բայց կային նաեւ այրեր եւ երիտասարդներ, խորասուզուած՝ ջերմեռանդ աղօթքներու մէջ: Ուշագրաւ էր նաեւ մուրացկաններու բազմութիւնը: Բոլոր հաւատացեալները մոմեր կը վառէին, Ս. Կոյսին եւ Յիսուս մանուկի պատկերները կը համբուրէին:

Խ. ՄԻՈՒԹԵԱՆ ԸՆԴՀ. ՄԱՐԴԱՀԱՄԱՐԸ տեղի ունեցաւ չորեքշաբթի օր, 6 յունուար: Ծրագիրը ուշադրութեամբ կազմուած ըլլալով, մասնաւոր դժուարութեան չհանդիպեցաւ: Հաւատացեալներու արձանագրութեան առեն հաստատուեցաւ որ անոնց թիւը շատ աւելի մեծ է քան կը նախատեսուէր, թէեւ շատեր կը վարանէին խոստովանիլ, վախնալով որ կ'արձանագրուի անցագրին մէջ...

ԵԹՈՎՊԻՈՅ վերջին լմբոստ ցեղապետը, Ռաս Իմրու, որ անցեալ ամիս գերի բռնուեցաւ Իտալացիներու կողմէ, Հռոմ ղրկուեցաւ օդանաւով, համաձայն Մուսոլինիի հրամանին: Մարաջախտ Կրացիանի, Եթովպիոյ փոխարքան, յանձնարարեց չարք մը ցեղապետներու որ ողջերթի երթան, որպէսզի համոզուին թէ Ռաս Իմրու ոչ բանտարկուած է, ոչ ալ նոր բանակ մը կազմած: Ռասը իր բոլոր բարեկամներուն պիտի պատմէ թէ ամբողջ Եթովպիան Իտալիոյ ձեռքը անցած է: Ուրիշ ցեղապետներ ալ Հռոմ փոխադրուած ըլլալով, տեղաւորուած են չքեղ հիւրանոցի մը մէջ:

ԳՈՐԾԱԴՈՒԼՆԵՐՈՒ վէճերը իրարու ետեւէ կը փակուին պարտաւորիչ իրաւարարութեամբ: Ամբողջ Ֆրանսայի մէջ միայն 6500 բանթողներ մնացած են, որոնց 1786ը Փարիզի շրջանին մէջ: Իսկ իբր 2000 հոգի դեռ գրաւած կը պահեն գործարանները: Լիլի մետաղագործական հաստատութեանց բանթողները դուրս ելան եւ աշխատանքը պիտի վերսկսին երկուշաբթի օր: Կաթնեղէնի եւ լուացքի բանուորներու գործադուլն ալ վերջացաւ:

«ԹՐՈՑՔԻՍԱԿԱՆՆԵՐՈՒ» հետապնդումը կը շարունակուի Խ. Միութեան մէջ: Կասկածամտութիւնը այնքան վարակիչ հանգամանք ստացած է որ, հին անդամներու նոր անդամատոմս չի տրուիր, առ այժմ: Քըրկըզներու երկրին կուսակցական վարիչներէն երեք հոգի, Էրման, Ջինքին եւ Գասումով արտաքսուեցան: Վերջինը կ'ամբաստանուի թէ թրոցքիական ընդդիմադիրներու խմբակին կը պատկանէր տասը տարի առաջ: Կեդր. Կոմիտէի անդամներէն մէկը «դիմակազերծ եղած է իբրեւ ոխերիմ թրոցքիական եւ խափանարար կուսակցներու»:

Տէր եւ Տիկին Մ. Մեզպուրեան եւ զաւակունք, Տէր եւ Տիկին Կ. Արաքսի Ակօշեան (Ամերիկա), Այրի Տիկին Մարիամ Տէրունեան, ինչպէս նաեւ Մեզպուրեան, Կուկունեան ընտանիքները սրտի խորունկ կսկիծով կը ծանուցանեն իրենց մօր, մեծ մօր եւ ազգականին՝

## ԱՅՐԻ ՏԻԿ. ԲԵԲՐՈՆ ՍԱՐԷԱՆԻ

մահը որ տեղի ունեցաւ Յունուար 5ին, 74 տարեկան հասակին:

Յուղարկաւորութիւնը տեղի ունեցաւ Յունուար 7ին եւ մարմինը ամփոփուեցաւ Թիէի գերեզմանատունը:





### Հ. Յ. Դ.

#### Փարիզ

ՇԱՎԻԼԻ Արդութեան խումբի ժողովը այսօր շաբաթ իրիկուն ժամը 8.30ին, ընկ. Ադամեանի բնակարանին մէջ: կարեւոր օրակարգ:

ՊԱՆԹԷՕ-ՔԱՇԱՆԻ Արծիւ ենթակոմիտէի ընկերահամախմբական հանդիպումը այսօր, շաբաթ երեկոյ ժամը 9ին, իր Ակումբին մէջ:

#### Գաւառ

ՎԱԼԱՆՍԻ կոմիտէն ընկերական ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները այսօր շաբաթ երեկոյ ժամը 8ին, միամանի Ակումբին մէջ: Բոլոր ընկերներու ներկայութիւնը պարտաւորիչ է:




Le Gérant: H. STEPHAN

Imprimerie A. DER (AGOPIAN) 17, Rue Dameame, PARIS (13)




## ՑՈՒՑԱՏԵՏՐ

ԻՍԻ ԼԷ ՄՈՒԼԻՆՈՅԻ կամաւորներու եւ Մարտիկներու միութեան ժողովը 10 Յուն. կիրակի երեկոյ ժամը ճիշդ 8ին, 6 պիս Պուլվար Ռօտէն, ընկեր Անդրէասին սրճարանի կից Կ. Խաչի դպրոցին մէջ: Ներկայ պիտի ըլլայ Փնդ. Տ. Բաղտասարեան: Կը հրաւիրուին բոլոր անդամները եւ համակիրները:

